Պրոլետարն. ր ..ր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ




№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### Նյութեր զրույցների համար



---


Խմբագրության հասցեն.— Երևան. ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





6321-Վ. 2


# ՄԵԾ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Պատմության գիրկն անցավ աշխատանքային մեծ հաջողություններով պսակված 1957 թվականը։ Եվ ամեն անգամ նոր տարեմուտին մարդիկ կրկին ու կրկին վերհիշում են, թե ինչ տվեց անցած տարին սիրասուն Հայրենիքին, ամբողջ աշխարհի մարդկությանը, իր ընտանիքին և անձամբ իրեն։ Դրա հետ միասին նոր տարեմուտին մարդիկ երկար մտածում են իրենց անելիքների, իրենց ապագայի մասին։ Իսկ ի՞նչ է խոստանում նոր տարին։ Եվ ահա այս երկու տեսանկյուններով նայելիս սովետական մարդկանց սրտերը լցվում է անհուն հրճվանքով։ Անցած 1957 թվականը շատ բանով նշանավորվեց մեր կյանքում։

Դուք, ընկեր ագիտատորներ անցյալ տարի շատ եք հիշատակել արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի բնագավառում մեր երկրի ձեռք բերած աննախընթաց նվաճումները։ Այդ նվաճումներն ակնառու կերպով ամփոփվեցին ՍՍՌՄ




2000 4830-58




Գերագույն Սովետի իններորդ սեսիայում, որը տեղի ունեցավ անցյալ տարվա դեկտեմբերի վերջերին։ Հենց միայն այն փաստը, որ նախնական տվյալներով 1957 թվականին մեր երկրում արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաճի 10 տոկոսով, նախատեսված 7,1 տոկոսի փոխարեն, իսկ գյուղատնտեսության համախառն արտադրանքը կավելանա 17 տոկոսով, ցույց է տալիս, թե Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ինչպիսի վիթխարի քայլ է կատարվել ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների կենսագործման ուղղությամբ, կոմունիստական շինարարության մեծ ճանապարհին։

Մենք հպարտանում ենք մեր հաջողություններով։ Մենք հրճվում ենք, որ մեր մոլորակի շուրջը պտտվում են սովետական գիտնականների ստեղծած աշխարհում առաջին արհեստական արբանյակները։

Անցյալ տարին հանդիսացավ սովետական երկրի միջազգային դրության ամրապնդման և նրա հեղինակության հետագա աճի, նոր հաջողությունների տարի։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումը քննության առավ կոմունիստական և բանվորական պարտիաների



ներկայացուցիչների խորհրդակցությունների արդյունքները և ՍՍՌՄ արհեստակցական միությունների աշխատանքի մասին։ Քննարկված հարցերի առթիվ պլենումի ընդունած որոշումները հսկայական նշանակություն ունեն մեր պարտիայի, մեր երկրի աշխատավորների համար։

1957 թվականը պատմության մեջ մտավ որպես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հոբելյանական տարի՝ քառասնամյակ, որպես համաշխարհային կոմունիստական շարժման ուժերի համախմբման, միջազգային իմպերիալիզմի ու ռեակցիայի է՛լ ավելի թուլացման տարի։

Ընկեր ագիտատորներ, գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում ու մեքենա-տրակտորային կայաններում, թաղերում ու բնակարաններում ունկնդիրների հետ զրուցելիս դուք միշտ հիշեցրել եք, որ պարտիան սովորեցրել է մեզ երբեք չհանգստանալ ձեռք բերած հաջողություններով։ Այդ բանն անհրաժեշտ է ասել նաև այսօր, երբ մենք մեծ հաջողություններով փակելով 1957 թվականը, թևակոխել ենք նոր՝ 1958 թվականը։

Այս նոր տարին կլինի կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրների կա-

տարման տարի։ Ինչպես պարզ երևում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի իններորդ սեսիայի նյութերից ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1958 թվականի պետական պլանի կարևոր առանձնահատկություններից մեկն այն է, որ նա մշակված է այնպիսի պայմաններում, երբ իրականացված են ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի ամրապնդման ու հետագա զարգացման խոշոր միջոցառումներ։

Ընկեր ագիտատորներ, դուք հանգամանորեն կուսումնասիրեք 1958 թվականի պետական պլանը։ Այդ ուսումնասիրությունը կկատարեք ոչ միայն մեծ նախագծումների հետ անձամբ ծանոթանալու համար, այլ պատմելու ձեզ լսող բանվորներին, կոլտնտեսականներին, մեխանիզատորներին, ծառայողներին, տնային տնտեսուհիներին։ Եվ տվ էլ ծանոթանա արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, գիտության զարգացման մեծ հեռանկարների հետ, նա չի կարող վստահությամբ չլցվել ապագայի նկատմամբ։ Այդ միանգամայն բնական ու հասկանալի է։ Միայն այն երկիրը, որն առաջնորդվում է մարքսիզմ-լենինիզմի



հզոր գաղափարներով, որին ղեկավարում է Կոմունիստական պարտիան, միայն այն երկիրը, որ այդպես վստահ է իր ապագայի նկատմամբ, միայն նա կարող է զարգացման այդպիսի պլաններ ունենալ։ Իսկ սովետական իշխանության երկարամյա փորձով մեր ժողովուրդը լավ է համոզվել, որ մեր պլանները իրականություն են դառնում աշխատավորների ստեղծագործական եռանդով, համաժողովրդական սոցիալիստական մրցության շնորհիվ։

Հենց այստեղ է, որ օգնության է գալիս ագիտատորը։ Նա ամեն մի զրույցի ժամանակ պարտիայի խոսքը հասցնում է մարդկանց։ Այդ բանն օգնում է յուրաքանչյուրին հասկանալու մեր երկրի առջև կանգնած վիթխարի խնդիրները, որոշելու իր տեղը, իր դերը կյանքում։

Մեր ագիտատորներն ավելի ուշադիր ուսումնասիրելով պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումները, մասսաների մեջ ավելի լայն բացատրական աշխատանք կկատարեն և կօգնեն պարտիական կազմակերպություններին՝ մոբիլիզացնելու քաղաքի ու գյուղի աշխատավորներին կոմունիստական շինարարության մեծ պլանները կենսագործելու համար։

# ՍՍՌՄ 1958 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Է. ՍԱՐԳՍՅԱՆ
Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստրի տեղակալ

*Օրերս ՍՍՌՄ Գերագույն Սովետի իններորդ սեսիան միահամուռ կերպով հավանություն տվեց և հաստատեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1958 թվականի Պետական պլանը և ՍՍՌՄ 1958 թվականի Պետական բյուջեն։*

*Կենսագործելով ՍՄԿԿ XX համագումարի որոշումները ՍՍՌՄ 1958 թվականի Պետական բյուջեն կազմված է այնպես, որ այն լիովին ապահովում է 1958 թվականի ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսված բոլոր միջոցառումների ֆինանսավորումը։*

*Նախքան 1958 թվականի Պետական բյուջեի քննարկումը, սեսիան քննարկեց և հաստատեց 1956 թվականի բյուջեի կատարման հիմնական ցուցանիշները և 1957 թվականի*



*բյուջեի կատարման նախնական արդյունքները։*

*1956 թվականի Պետական բյուջեն եկամուտների գծով կատարվել է 585,9 միլիարդ ռուբլի գումարով, կամ 101 տոկոսով և ծախսերի գծով 563,5 միլիարդ ռուբլի գումարով կամ 101,2 տոկոսով, ծախսերի նկատմամբ եկամուտների 22,4 միլիարդ ռուբլի գերազանցումով։*

*Ըստ նախնական տվյալների և հաշվի առնելով պետական փոխառությունների վերաբերյալ ընդունված որոշումը, 1957 թվականի Պետական բյուջեն կկատարվի եկամուտների գծով՝ 614,5 միլիարդ ռուբլի գումարով կամ 100,4 տոկոսով, իսկ ծախսերի գծով՝ 598,2 միլիարդ ռուբլի գումարով կամ 99,9 տոկոսով։ Սպասվում է ծախսերի նկատմամբ եկամուտների 16,3 միլիարդ ռուբլի գերազանցում։*

*1958 թվականի Պետական բյուջեի ծավալը հաստատվեց եկամուտների գծով՝ 642,9 միլիարդ ռուբլի գումարով և ծախսերի գծով՝ 627,7 միլիարդ ռուբլի գումարով, ծախսերի նկատմամբ եկամուտների 15,2 միլիարդ ռուբլի գերազանցումով։*

*1957 թվականի համեմատությամբ 1958 թվականին բյուջեի եկամուտները ավելա-*

նում են մոտ 31,9 միլիարդ ռուբլով, իսկ ծախսերը՝ 23,1 միլիարդ ռուբլով։

ՍՍՌՄ 1958 թվականի Պետական բյուջեի եկամուտների այդ աճը պայմանավորված է ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսված արտադրության և ապրանքաշրջանառության աճով, արտադրանքի ինքնարժեքի իջեցմամբ և ներարտադրական օգուտների ավելացմամբ։

ՍՍՌՄ 1958 թվականի Պետական բյուջեի եկամուտների հիմնական մասը՝ 88,7 տոկոսը կազմում են սոցիալիստական տնտեսության եկամուտները, այն է՝ շրջանառության հարկի մուտքերը, ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների շահույթներից կատարվող մասհանումները։ Այդ եկամուտները, 1957 թվականի համեմատությամբ, 1958 թվականին աճում են 44,7 միլիարդ ռուբլով կամ 8,5 տոկոսով։ Ինչ վերաբերում է բնակչությունից ստացվող միջոցներին, ապա այն 1957 թվականի համեմատությամբ նվազում է 20 միլիարդ ռուբլով կամ 21,4 տոկոսով։

Սոցիալիստական ձեռնարկություններից ու կազմակերպություններից պետության եկամուտների նման ավելացումը հնարավորություն տվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետին



քննարկել ամուրի, միայնակ և սակավանդամ ընտանիք ունեցող քաղաքացիներից հետագայում հարկ գանձելու հարցը և հնարավոր գտավ 1958 թվականի հունվարի 1-ից այդ հարկից ազատելու երեխա ունեցող բոլոր անձանց, ինչպես նաև երեխա չունեցող միայնակ կանանց (չամուսնացած և այրի), դրա հետևանքով այդ հարկը վճարողների գրեթե 85 տոկոսը լրիվին ազատվեց հարկադրումից, իսկ հարկի մուտքերը տարեկան կպակասեն մոտավորապես 6 միլիարդ ռուբլի։

Պետական փոխառությունների թողարկման վերացման հետևանքով 1958 թվականի Պետական բյուջեում զգալիորեն պակասում են նրանցից ստացվող եկամուտները և այն կազմում է ընդամենը 4,6 միլիարդ ռուբլի։ Վերոհիշյալ 4,6 միլիարդ ռուբլուց 2,6 միլիարդ ռուբլին հանդիսանում է 1957 թվականին իրացված փոխառությունների այն մասը, որի մուծումները կավարտվեն 1958 թվականի սկզբներին և 2 միլիարդ ռուբլի պետական 3 տոկոսանոց ներքին շահող փոխառություններից։

1958 թվականի բյուջեում նախատեսված է ավելացնել հատկացումները սոցիալիստական էկոնոմիկայի բոլոր ճյուղերին։

Ժողովրդական տնտեսության զարգացման

համար բյուջեից հատկացվելու է 257, 1 միլիարդ ռուբլի՝ չհաշված 155,7 միլիարդ ռուբլին, որը հատկացվում է տնտեսական կազմակերպությունների շահույթներից և այլ սեփական միջոցներից։ Ժողովրդական տնտեսության ծախսերի ընդհանուր գումարը 1957 թվականի համեմատությամբ ավելանում է 36,6 միլիարդ ռուբլով կամ 9,7 տոկոսով։

Արդյունաբերական բոլոր ճյուղերի զարգացմանը Պետական բյուջեից հատկացվում է 129 միլիարդ ռուբլի։ Առավել խոշոր գումարներ են հատկացվում սև մետալուրգիային, քիմիական և նավթի արդյունաբերությանը։ Զգալի հատկացումներ են կատարվել գյուղատնտեսական հումք վերամշակող ձեռնարկությունների արտադրական կարողությունները ավելացնելու, սննդարդյունաբերությունն ընդլայնելու, թեթև արդյունաբերության կարողությունները ավելացնելու համար։

1958 թվականին կապիտալ աշխատանքների ընդհանուր ծավալը նախատեսված է 198,8 միլիարդ ռուբլի կամ 7,4 տոկոսով ավելի քան 1957 թվականին։ Ընդսմին նախատեսված է նախահաշիվների դիմաց շին-



մոնտաժային աշխատանքների արժեքն իջեցնել 4,6 տոկոսով։

Գյուղատնտեսության մեջ 1958 թվականին ներդրվելու է 65,2 միլիարդ ռուբլի, այդ թվում բյուջեից 53, 4 միլիարդ ռուբլի և տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցների հաշվին 11,8 միլիարդ ռուբլի։

Մեր երկրում տարեցտարի լայնանում են լուսավորության, գիտության, առողջապահության հիմնարկների ցանցը և բարելավվում է սոցիալական ապահովության գործը։ Դրան համապատասխան աճում են նաև պետական ծախսերը սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար։ 1958 թվականին բյուջեում այդ ծախսերը սահմանված են 212,2 միլիարդ ռուբլի կամ բյուջեի 33,8 տոկոսը, 1957 թվականի 188,4 միլիարդ ռուբլու դիմաց կամ բյուջեի 31,2 տոկոսը։

Վերոհիշյալ հատկացումներից հանրակրթական դպրոցների համար և երեխաների ու դեռահասների դաստիարակության մյուս միջոցառումների համար կծախսվեն 37,4 միլիարդ ռուբլի։ Կադրերի պատրաստման ծախսերը կկազմեն 22,4 միլիարդ ռուբլի, այդ թվում բարձրագույն ուսումնական հաս-

տատությունների և տեխնիկումների պահպանությունը 16 միլիարդ ռուբլի։

1958 թվականին նախատեսված է բժշկական հիմնարկների ցանցի հետագա ընդարձակում և նրանց կողմից աշխատավորների սպասարկման բարելավում։ Այդ նպատակով բյուջեի ծախսերը պլանավորված են 39,7 միլիարդ ռուբլի։

Սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրության համար կծախսվի 88,2 միլիարդ ռուբլի կամ 16,8 միլիարդ ռուբլի ավելի, քան 1957 թվականին։ Այդ հատկացումներից 66 միլիարդ ռուբլի նախատեսված է հատկացնել բնակչության կենսաթոշակների համար, որը 1955 թվականի համեմատությամբ աճում է 2,2 անգամ։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ մեծ ուշադրություն են նվիրել ժողովրդական բարեկեցության վերելքին։

ՍՍՌՄ ազգային եկամուտը, որը ժողովրդական բարեկեցության բարձրացման աղբյուրն է, 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, կաճի 8 տոկոսով։

Վերջին տարիներին իրագործվեցին մի շարք կարևոր ձեռնարկումներ, որոնք ապա-



հովում են սովետական ժողովրդի կյանքի բարելավումը և բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների ռեալ եկամուտների բարձրացումը։ Դրանք են՝ մի շարք կատեգորիաների բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացումը, կենսաթոշակային ապահովության նշանակալի բարելավումը, գյուղատնտեսական մթերքների մթերման ու գնման գների բարձրացումը, բնակչությունից գանձվող հարկերի նվազեցումը, պետական փոխառությունների թողարկման վերացումը և այլն։ 1958 թվականին այդ միջոցառումների համար պետական լրացուցիչ ծախսերը կկազմեն մոտ 63 միլիարդ ռուբլի։ Եթե հաշվի առնենք նաև աշխատավարձի ֆոնդի աճը, ապա բանվորների ու ծառայողների եկամուտները 1958 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կաճեն մոտավորապես 120 միլիարդ ռուբլով։ Կոլտնտեսությունները և կոլտնտեսականները 1955 թվականի համեմատությամբ մոտավորապես 40 միլիարդ ռուբլով ավելի դրամական եկամուտներ կունենան, ընդ որում միաժամանակ կաճի աշխօրերին բաշխվող մթերքների քանակը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հսկայական նշա-

նակություն են տալիս աշխատավորների համար բնակարանային շինարարությունն ընդլայնելու հարցին։ Պարտիան խնդիր է դրել մոտակա 10—12 տարում լուծել բնակարանային պրոբլեմը։ 1958 թվականին պետական բնակարանային շինարարության կապիտալ ներդրումների ծավալը կկազմի 36,8 միլիարդ ռուբլի։ Բացի դրանից, բնակարանային շինարարության համար կըհատկացվեն խոշոր գումարներ տնտեսական ու կոոպերատիվ կազմակերպությունների միջոցներից, ինչպես նաև բանկային վարկեր։ Նախատեսված է 1958 թվականին կառուցել և շահագործման հանձնել 61 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Բացի դրանից, կոլտնտեսությունների և գյուղական ինտելիգենցիայի ուժերով նախատեսվում է կառուցել 800 հազար բնակելի տուն։

Գիտության զարգացման համար պետական ծախսերը 1958 թվականին ավելացվում են 1,8 միլիարդ ռուբլով և կկազմեն 18,2 միլիարդ ռուբլի, այդ թվում բյուջեից 15 միլիարդ ռուբլի։ Սովետական գիտնականները Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի ամենօրյա հոգատարությանը պատասխանում են իրենց համաշխարհային-



պատմական նշանակություն ունեցող գիտական հայտնագործություններով։ Սովետական գիտական մտքի խոշորագույն նվաճումներն են հանդիսանում միջմայրցամաքային բալեստիկ հրթիռի և երկրի՝ աշխարհում առաջին արհեստական արբանյակների ստեղծումը և հաջող արձակումը։

Նյութական և ֆինանսական ռեսուրսների գերակշռող մասը հատկացնելով էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության զարգացմանը, Սովետական պետությունը արդի միջազգային իրադրության պայմաններում միևնույն ժամանակ չի կարող հաշվի չառնել երկրի անվտանգությունն ապահովելու անհրաժեշտությունը։ 1958 թվականի բյուջեով պաշտպանության ծախսերը նախատեսված են 96,3 միլիարդ ռուբլի՝ (կամ բյուջեի ծախսերի 15,3 տոկոսը) 1957 թվականի 96,7 միլիարդ ռուբլու դիմաց։ Պաշտպանության ծախսերը 1955 թվականի համեմատությամբ նվազեցվում են 15,8 միլիարդ ռուբլով։ Դա լավագույն ապացույցն է այն բանի, որ Սովետական Միությունը անշեղորեն վարում է խաղաղության և ժողովուրդների բարեկամության ամրապնդման քաղաքականություն։

Բոլորովին այլ է պատկերը կապիտալիստական երկրներում։

Այսպես օրինակ՝ ԱՄՆ-ի 1958/59 թվականի պետական բյուջեի նախագծում, որը առաջիկայում ներկայացվում է կոնգրեսի քննարկմանը, նախատեսված է ուղղակի ռազմական ծախսեր մոտ 40 միլիարդ դոլար, որը 2 միլիարդ դոլարով ավելի է նախորդ տարվա բյուջեով հաստատված գումարից։

Փաստացի ուղղակի ռազմական ծախսերը ընթացիկ տարում ԱՄՆ-ում կազմում են 39 միլիարդ դոլար։ Եթե այդ թվի վրա ավելացնենք նաև ԱՄՆ-ի կողմից իր դաշնակիցներին սպառազինելու ծախսերը, ատոմային սպառազինության և այլ անուղղակի ռազմական ծախսերը, որոնք կազմում են ավելի քան 10 միլիարդ դոլար, ապա բոլոր ռազմական ծախսերը միասին վերցրած կկազմեն ԱՄՆ-ի բյուջեի ընդհանուր գումարի 70 տոկոսը։

Արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակառուցելու և տնտեսական շինարարության մեջ միութենական ռեսպուբլիկաների դերը բարձրացնելու կապակցությամբ խիստ աճել է այդ ռեսպուբլիկաների բյուջեների ծախսերը։ 1958 թվա-



կանին նրանց բյուջեները նախատեսված են 319,1 միլիարդ ռուբլի՝ 1957 թվականի 194,1 միլիարդ ռուբլու դիմաց։ Միութենական ռեսպուբլիկաների բյուջեների տեսակարար կշիռը ՍՍՌՄ Պետական բյուջեի ծախսերում 1958 թվականին կազմում է 50,9 տոկոսը, 1957 թվականի 24,5 տոկոսի դիմաց։

Հայկական ՍՍՌ Պետական բյուջեն հաստատված է 2.554.064 հազար ռուբլի, որը նախորդ տարվա համեմատությամբ աճել է 905.374 հազար ռուբլով կամ 54,9 տոկոսով։

Պետական բյուջեով սահմանված այդ գումարը լիովին կբավարարի մեր ռեսպուբլիկայի ժողովրդատնտեսական պլանով նախատեսված բոլոր միջոցառումների ֆինանսավորմանը։

ՍՍՌՄ 1958 թվականի պետական բյուջեում նախատեսված է տնտեսական զարգացման, սոցիալ-կուլտուրական շինարարության և պետության մյուս պահանջմունքների անխափան ֆինանսավորման համար անհրաժեշտ դրամական հսկայական միջոցների մոբիլիզացում։ 1958 թվականի ժողովրդա-տնտեսական պլանի և Պետական բյուջեի հաջող կատարումը կնպաստի կոմունիզմի ուղիով մեր երկրի հետագա առաջընթացին։

Կ 830-58



# ԵՐԿՐԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՐԲԱՆՅԱԿՆԵՐԸ

Դոցենտ՝ Բ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

*Ընդամենը կես դար է անցել այն օրից, երբ մարդը առաջին անգամ երկրի մակերևույթից կարողացավ կտրվել և օդ բարձրանալ։ Այդ ժամանակամիջոցում մթնոլորտի կառուցվածքի և նրա մեջ կատարվող երևույթների վերաբերյալ բավականին ուսումնասիրություններ են կատարվել։ Մեկը մյուսի ետևից լուծվում էին օդային օվկիանոսի առեղծվածները։ Սակայն ուսումնասիրությունների մեծ մասը տեղի են ունեցել մթնոլորտի համեմատաբար ցածր շերտերում։ Սահմանափակ թվով են այն ուսումնասիրությունները, որոնք վերաբերում են բարձր շերտերին և նրանց մեջ կատարվող երևույթներին, որովհետև ինքնաթիռների, օդապարիկների և այլ միջոցների թռիչքի առաստաղը սահմանափակ է եղել։ Ուսումնասիրությունները կատարվել են ոչ ավելի քան 40 կմ. բարձրության վրա, իսկ երկրի մթնոլորտի*



*բարձրությունը հասնում է շուրջ 1000 կիլոմետրի, այսինքն ուսումնասիրված էր ամբողջ մթնոլորտի մի չնչին մասը՝ մոտավորապես 3 տոկոսը։*

*Սկսած 1946 թվականից գիտական նպատակներով օգտագործվեցին նաև հրթիռները։ Քանի որ սրանց շարժիչի մեջ այրումը կատարվում է իրեն՝ վառելանյութի մեջ պարունակած թթվածնի օգնությամբ (իսկ ռեակտիվ ինքնաթիռներում օգտագործվում է մթնոլորտում պարունակած թթվածինը, որի քանակությունը բարձրության հետ խիստ կերպով նվազում է), հրթիռների թռիչքի առաստաղը բավականին մեծ է ստացվում։ Սակայն հրթիռները ևս թերություններ ունեն։ Նրանց օգնությամբ ստացված տվյալները վերաբերում են միայն նետված ուղղությանը և որ գլխավորն է, նրանք մթնոլորտի բարձր շերտերում լինում են շատ կարճ ժամանակամիջոցում՝ ոչ ավել, քան 1—2 րոպե։*

*Երկրագնդի մթնոլորտի վերին շերտերի կառուցվածքը և նրանց մեջ կատարվող մի շարք կարևոր երևույթները, այդ թվում ռադիոալիքների տարածման պայմանները, արևից եկող ուլտրամանուշակագույն և ռենտգենյան ճառագայթների ուսումնասիրությունը, եղանակի հետ կապված մի շարք երևույթները, կոսմի-*

կական տարածությունից եկող ճառագայթների, երկրագնդի մագնիսական դաշտի և այլն ուսումնասիրությունը կարևոր նշանակություն ունի ինչպես գիտության համար, այնպես էլ պրակտիկ կյանքում։ Եթե դրան ավելացնենք նաև այն, որ մարդը ցանկանում է հետագայում միջմոլորակային ճանապարհորդություններ կատարել, ապա հասկանալի կլինի, թե ինչու շատ վաղ ժամանակներից գիտնականները երազել են մթնոլորտի վերին շերտերում կամ նրանից դուրս, երկար ժամանակամիջոցում գործող լաբորատորիաներ ունենալ։ Այդպիսի լաբորատորիաներ են արհեստական արբանյակները։

Արհեստական արբանյակների բաց թողումը բավականին մեծ դժվարությունների հետ է կապված։ Բանը նրանումն է, որ արբանյակը որպեսզի երկրի շուրջը պտտվի, անհրաժեշտ է նրան հասցնել որոշակի բարձրության և տալ համապատասխան ուղղություն և արագություն։ Թե բարձրացման և թե արագության չափը մինչև այժմ երկրի վրա հայտնի մարմինների տեղափոխման չափից և արագությունից բավականին մեծ է և այդ գործում թույլ տված մի փոքր սխալը կարող է արբանյակը նպատակին չհասցնել։ Դժվար է այդպիսի պահանջներ դնել այն ժամանակ,



երբ մթնոլորտի վերին շերտերը իրենց հատկություններով գրեթե մեզ անհայտ են։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում այդ ուղղությամբ կատարված փորձերը անհաջողության մատնվեցին և «Ավանգարդ» անվանված արբանյակը, ինչպես գիտեք, մինչև վերջերս էլ իր հենարանից դուրս չէր եկել, իսկ 1957 թվականի դեկտեմբերի 6-ին, փորձարկման ժամանակ իրեն տանող հրթիռի հետ միասին պայթեց։

Միջմայրցամաքային հրթիռների ստեղծումը բավականին հեշտացրեց սովետական արբանյակների հաջող արձակումը։ Հոկտեմբերի 4-ին բարձրացվեց առաջին, իսկ մեկ ամիս անց նաև երկրորդ արբանյակը։ Արբանյակների առաջին արձակումը սովետական երկրից պատահական երևույթ չէր։

Այդ ուղղությամբ դեռևս վաղուց շատ արժեքավոր աշխատություններ են տվել Ցիոլկովսկին, Զապլիգինը, Ժուկովսկին և հայտնի ռևոլյուցիոներ Կիբալչիչը։ Հրթիռների ու արբանյակների ստեղծման ու կատարելագործման ուղղությամբ զբաղվել են սովետական մեծ թվով գիտնականներ, կոնստրուկտորներ ու ինժեներներ։ Եվ վերջապես այդ բանին մեծ օժանդակություն ցույց տվեց նաև գիտության ու տեխնիկայի հզոր վերելքը

ՍՍՌՄ-ում։ Իրականացան հռչակավոր գիտնական Կ. Ի. Ցիոլկովսկու խոսքերը, որը խոսելով ավիացիայի և հրթիռային տեխնիկայի զարգացման հեռանկարների մասին, ասել էր. «Մի բանում ես հաստատ համոզված եմ, որ առաջնությունը կպատկանի Սովետական Միությանը»։

Արբանյակին հասցնելով մոտ 1000 կմ. բարձրության և հորիզոնական ուղղությամբ նրան շուրջ 8 կմ/վրկ արագություն հաղորդելով հասնում են այն բանին, որ արբանյակի վրա ազդող երկրի ձգողական ուժը և պտտման շնորհիվ առաջացած կենտրոնախույս ուժը իրար հավասարակշռում են։ Այդ մոմենտից սկսած արբանյակը առանց արտաքին ուժ գործադրելու, ինքնուրույն կերպով՝ իներցիայով պտտվում է երկրի շուրջը։ Եթե մթնոլորտ չլիներ, ապա արբանյակը կպտտվեր մշտնջենապես։ Սակայն այդ բարձրություններում մթնոլորտ գոյություն ունի. ճիշտ է, նրա խտությունը շատ փոքր է, սակայն այդ չնչին քանակությամբ մթնոլորտն էլ արբանյակի շարժմանը դիմադրություն է ցույց տալիս և հետզհետե փոքրացնում նրա արագությունը։ Բայց փոքր արագությամբ պտտվելու դեպքում փոքր կլինի նաև նրա կենտրոնախույս ուժը։ Դա նշանակում է, որ



արբանյակը սպիրալաձև ուղեծրով շարժվելով, հետզհետե կմոտենա երկրագնդին և երբ անցնի մթնոլորտի ստորին խիտ շերտերով, շփման հետևանքով նրա ջերմաստիճանը կբարձրանա, հետզհետե կշիկանա և կայրվի. մի մասն էլ չհասցնելով լրիվ այրվել, կընկնի երկրի վրա։ Առաջին արբանյակի հրթիռի վերջին մասը, ինչպես և նախատեսվում էր, այդ պրոցեսն անցավ դեկտեմբերի սկզբներին։ Ինքը՝ առաջին արբանյակը, կընկնի մոտավորապես հունվար ամսին, իսկ երկրորդ արբանյակը մեծ բարձրություն ունենալու պատճառով (ուր մթնոլորտի խտությունը շատ ավելի փոքր է) ավելի երկար կյանք կունենա։

Առաջին արբանյակի հրթիռի վերջին մասը, նրան համապատասխան արագություն տալուց հետո, անջատվել էր և սկսել ինքնուրույն կերպով պտտվել։ Երկրորդ արբանյակի սարքավորումներն ամրացված են հենց հրթիռի վերջին մասի վրա։ Այդ ձևով պտտվող զանգվածը ավելի մեծ չափեր ունի և դիտման համար բավականին հարմար է։ Եթե առաջին արբանյակը կշռում է ընդամենը 83,6 կգ., ապա երկրորդ արբանյակը, առանց հրթիռի պտտվող մասի, կշռում է ավելի քան կես տոննա։

Երկրորդ արբանյակի առջևի մասում գըտ-

նվում է մի սարքավորում, որը չափում էր արևի կարճալիք ճառագայթումները՝ ուլտրամանուշակագույն և ռենտգենյան ճառագայթների ինտենսիվությունն ու էներգիան։ Դրանից անմիջապես հետո, գնդաձև կոնտեյներում տեղավորված են գործիքներ, որոնք չափում էին, ջերմաստիճանը արբանյակի ներսում և դրսում, երկնաքարերի բախման ուժն ու նրանց քանակը։ Երկու ռադիոհաղորդիչները անընդհատ ազդանշաններ էին ուղարկում, որոնց օգնությամբ որոշվում էր ոչ միայն արբանյակի դիրքը, այլև ռադիոալիքների տարածման պայմանները մթնոլորտի բարձր շերտերում։ Իր կառուցվածքով սֆերիկ կոնտեյները նման է առաջին արբանյակին։ Սֆերիկ կոնտեյներից հետո՝ գլանաձև հերմետիկ խցիկում, տեղավորված է փորձարկվող կենդանին՝ «Լայկա» շունը։ Կենդանու բարձրացման նպատակն էր ուսումնասիրել արբանյակի հետ կապված մի շարք բժշկա-բիոլոգիական խնդիրներ։ Հատուկ սարքավորումներով անընդհատ չափվում էին կենդանու զարկերակը, շնչառությունը, արյան ճնշումը և ֆիզիոլոգիական այլ երևույթներ։ Նշված բոլոր տվյալները երկու ռադիոհաղորդիչների միջոցով, որոնք գտնվում են սֆերիկ կոնտեյներում, հաղորդվում էին եր-



կրի վրա գտնվող հատուկ կայաններին։ Այս բոլոր չափումների և նրանց հաղորդման համար, ինչպես նաև կենդանու խցիկում նորմալ ջերմային ու մթնոլորտային պայմաններ պահպանելու և «Լայկա»-յին ավտոմատիկ կերակրելու համար անհրաժեշտ էր էլեկտրական էներգիա։ Էներգիայի պաշարը նախատեսված էր 7 օրվա համար, որից հետո տվյալների հաղորդումը դադարեց։

Օպտիկական և ռադիոլոկացիոն դիտումները արբանյակների բաց թողնման օրից մինչև այժմ էլ շարունակվում են։ Օպտիկական կայաններում գտնվում են 15—30 այդ նպատակների համար հատուկ պատրաստված դիտակներ, որոնք դասավորվում են այնպես, որ նրանց տեսողության դաշտերը մեկը մյուսի շարունակությունը կազմեն, այսինքն ստեղծվում է ուղեծրին ուղղահայաց օպտիկական պատնեշ։ Որևէ դիտողի տեսողության դաշտով անցնելիս ճշգրիտ կերպով որոշվում են արբանյակի անցման մոմենտը և կոորդինատները (տվյալներ, որոնք որոշում են արբանյակի դիրքը երկնքում)։ Տվյալներն անմիջապես հաղորդվում են Մոսկվա, որտեղ դրանց միջոցով հնարավոր է լինում որոշել արբանյակի ճշգրիտ ուղեծիրը, իսկ վերջինիս օգնությամբ էլ որոշվում է մթնոլորտի խտու-

թյունը արբանյակի բարձրության վրա, երկրի ճշգրիտ ձևը, նրա զանգվածի բաշխվածությունը, ինչպես նաև կանխորոշվում են արբանյակի հետագա դիտման վայրերն ու ժամանակը։

Տարբեր պտույտների ժամանակ արբանյակը տարբեր բնակավայրերի վրայով է անցնում։ Այդ հետևանք է այն բանի, որ արբանյակը իր ուղեծրի հարթության դիրքը չի փոխում, իսկ նրա տակ երկիրը պտտվում է իր առանցքի շուրջը։ Սովետական արբանյակները շարժվում են այնպիսի ուղեծրերով, որոնք հասարակածի հետ կազմում են $65^0$ անկյուն։ Այդ հնարավորություն է տալիս նրանց դիտել հյուսիսային և հարավային բևեռային շրջանների միջև գտնվող ամբողջ շերտից, այսինքն երկրի բնակչության մոտ 95 տոկոսի կողմից։

Սովետական արբանյակները յուրաքանչյուր պտույտի ընթացքում, որը տևում է մեկ ու կես ժամ, անցնում են ավելի քան 45 հազար կիլոմետր տարածություն։ Հսկայական արագությամբ ճախրելով երկրագնդի տարբեր քաղաքների վրայով, նրանք աշխարհով մեկ տարածում են սովետական գիտության ու տեխնիկայի փառքը, այն գիտնականների, կոնստրուկտորների ու ինժեներների փառքը, որոնք սկիզբ դրին մարդկային կուլտուրայի



պատմության նոր դարաշրջանին՝ նրա կոսմիկական գոյության դարաշրջանին։

Հետագայում տարբեր բարձրությունների վրա նոր և նոր արբանյակներ բաց կթողնվեն։ Մինչև մարդկային անձնակազմով միջմոլորակային ճանապարհորդություն կատարելը կլուծվի արբանյակների անվնաս վայրէջքի հարցը, ինչպես նաև ավելի մանրամասնորեն կուսումնասիրվեն նման ճանապարհորդության հետ կապված զանազան խնդիրներ։ Դրանցից են տարբեր ճառագայթներից պաշտպանվելու խնդիրը, երկնաքարերի հետ բախման կանխումը և այլն։ Անկշռության հանգամանքը ևս որոշ դժվարություններ կառաջացնի։ Կոսմիկական նավում իրերը և մարդիկ հատակին չեն կարող հենվել։ Հեղուկ նյութերը պետք է պահել միայն փակ ամաններում, հակառակ դեպքում նրանք սենյակով մեկ կտարածվեն։ Քայլել հնարավոր չի լինի. տեղափոխվելու համար պետք է բռնել անշարժ իրերից և շարժվել ձգվելով կամ հրվելով նրանցից։ Ջուրը խմելիս այն պետք է հատուկ ձևով (օրինակ պուլվերիզատորներով) հասցնել կոկորդը։ «Պառկել» կարելի է ոչ միայն հատակին, այլև օդում՝ ցանկացած բարձրության և դրության մեջ։ Այս բոլորն իհարկե անսովոր կլինեն և մարդու գործո-

դություններում որոշ դժվարություն ու անվըստահություն կառաջացնեն։ Սակայն դրանց մի կերպ կարելի է ընտելանալ։ Անկշռության հանգամանքը շատ ավելի վատ ազդեցություն կունենա մարդու մի շարք օրգանների աշխատանքի վրա, մանավորապես արյան շրջանառության, շնչառության և մարմնի ջերմաստիճանի վրա։

Սովետական երկրորդ արբանյակում կենդանու տեղավորելը այս ուղղությամբ ևս բավականին տվյալներ կտա։ Անհրաժեշտության դեպքում կոսմիկական նավին իր առանցքի շուրջը պտույտ հաղորդելով, կարելի է կշիռը փոխարինել կենտրոնախույս ուժով։

Ի դեպ նշենք, որ մթնոլորտի բացակայության պատճառով երկնային մարմինների վրա (այդ թվում նաև Լուսնի) ճանապարհորդները պետք է հատուկ զգեստներ հագնեն և որ իրար հետ կարող են խոսել իրենց վրա կրվող հատուկ ռադիոսարքավորումների միջոցով։

Միջմոլորակային ճանապարհորդությունների ժամանակ կարևոր է նաև շատ մեծ պաշար չվերցնելու հարցը։ Անհրաժեշտ է մտածել օդի, ջրի և սննդի քիչ և ռացիոնալ օգտագործման մասին։ Պետք է ընտրել փոքր քաշ, բարձր կալորիականություն ունեցող և երկար պահպանվող սննդամթերքներ։ Օգտագործ-



ված ջուրը պետք է հատուկ սարքավորման միջոցով մաքրվի, որպեսզի այն հնարավոր լինի նորից օգտագործել։ Թթվածնի լրացուցիչ քանակություն ստանալու համար, ըստ երևույթին, նավերում անհրաժեշտ կլինի բուսականություն աճեցնել։ Էլեկտրական էներգիա ստանալու նպատակով կարելի է օգտագործել արևի ճառագայթային էներգիան։ Եվ վերջապես պետք է վառելանյութի լրացուցիչ պաշար ունենալ՝ ինչպես այլ երկնային մարմնի վրա վայրէջք կատարելու (անկման արագությունը փոքրացնելու համար պետք է արհեստական դիմադրություն առաջացնել), այնպես էլ հետագայում նրանից պոկվելու և երկրի վրա նորից իջնելու համար։

Այստեղ համառոտ նշված, ինչպես նաև այլ հանգամանքներ մանրամասն ուսումնասիրելու նպատակով նոր արձակվող արբանյակների վրա զանազան այլ սարքավորումներ կտեղադրվեն. մթնոլորտի վերին շերտերը կբարձրացվեն այլ կենդանիներ և այդ թվում, հավանաբար, նաև մարդանման կապիկներ։

Գիտության հսկայական առաջընթացը ցույց է տալիս, որ միջմոլորակային ճանապարհորդությունը շատ հեռու ապագայի խնդիր չի կարող համարվել և ներկա սերունդը անկասկած, ականատես կլինի այդ հեռավոր ու չափազանց հետաքրքրական ճանապարհորդություններին։

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐԻ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

Պրոֆեսոր՝ Ս. ՂԱԶԱՐՅԱՆ

*Լեզուն մարդկային հաղորդակցման կարևորագույն միջոց է, հասարակության անդամների հարաբերությունների կարգավորման, նրանց ազատ ու լայն խմբավորման ամենաէական պայմաններից մեկը, պայքարի ու աշխատանքի հզորագույն գործիք, որին կատարելապես տիրապետող պրոպագանդիստը կամ ագիտատորը, պարտիական աշխատողը կամ գրականագետը հեշտությամբ կարող է բոլշևիկյան ճշմարտացի խոսքը հասցնել մասսաներին, զինել նրանց մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարներով, նախապատրաստել նրանց հաղթահարելու բոլոր դժվարությունները և ակտիվորեն մասնակցելու կոմունիզմի կառուցման վեհ գործին։*

*Մարքսիզմի կլասիկները, նկատի ունենա-*



*լով լեզվի այդ բացառիկ կարևորությունը՝ մեծ ուշադրություն են նվիրել լեզվական հարցերին, հետևողականորեն մշակել են իրենց լեզուն և դրանով իսկ օրինակ տվել գրական ու պրոպագանդիստական աշխատանքով զբաղվողներին անընդհատ հղկելու իրենց ոճը և ներգործուն դարձնելու իրենց խոսքը։*

*Ամենաբարդ հասկացողությունները մարքսիզմի կլասիկները կարողացել են մատուցել պարզ և հասկանալի լեզվով։ Նրանց լեզվի այդ առանձնահատկությունը նկատի ունենալով Մ. Գորկին խորհուրդ էր տալիս փքուն ոճի սիրահարներին՝ խոսել ընթերցողի հետ պակաս գերիմաստուն ձևով, որովհետև, ասում էր նա, չկա այնպիսի բան, որ կարելի չլիներ ասել պարզ, հասարակ բառերով, Վ. Ի. Լենինը անհերքելիորեն ապացուցում էր այդ։*

*Վ. Ի. Լենինը պահանջում էր երբեք չմոռանալ ընթերցողին, բայց խուսափել գռեհկաբանումից, ինչպես նաև կեղծ ակադեմիզմից, միշտ պահպանել ոճի նպատակասլացությունն ու դիպուկությունը։ Այդ սկզբունքները Լենինը պահպանում էր իր բոլոր գործերում այնպես, որ նույնիսկ բոլշևիզմի թշնամիները չէին կարող ժխտել նրա*

խոսքի բարձր կուլտուրան, գերող հատկությունները, հակառակորդին մահացու կերպով խոցելու ուժգնությունը և աշխատավորության մեծագույն ստեղծագործությունների ընդունակ դարձնելու ուժը։ Իր բոլոր երկերը՝ գիտական, փիլիսոփայական, պրոպագանդիստական կամ քաղաքական, Լենինը գրել է անխոցելի տրամաբանություն ունեցող կուռ լեզվով։ Նա օգտագործել է լեզվական բազմազան հնարանքներ՝ իր խոսքն ավելի ներգործուն դարձնելու համար։ Այսպես, օրինակ, «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» հռչակավոր երկի շատ խորագիրներ նա սկսել է հարցական նախադասություններով, որոնք լարում են ընթերցողի ուշադրությունը, ստիպում նրան հետևել հեղինակի մտքերին և գտնել հարցի պատասխանը. «Արդյոք բնությունը գոյություն ունեցե՞լ է մարդուց առաջ», «Արդյոք ուղեղի՞ օգնությամբ է մտածում մարդը», «Գոյություն ունի՞ արդյոք օբյեկտիվ ճշմարտություն», «Ի՞նչ է մատերիան», «Ի՞նչ է փորձը», «Դեպի ո՞ւր է աճում էմպիրիոկրիտիցիզմը», «Ինչպե՞ս կարող էր Յու. Դիցգենը դուր գալ ռեակցիոն փիլիսոփաներին», «Հնարավո՞ր է շարժումն առանց մատերիայի» և այլն։



Վ. Ի. Լենինը ծաղրում էր գրասենյակային գրագրությունների ոճը, բայց ոչ թե նրա մեջ գործածած անհասկանալի բառերի, այլ շաբլոն շարահյուսության համար, որը չոր ու անկանոն լինելու հետևանքով չէր հասնում ընթերցողին, անհասկանալի էր մնում։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ բոլոր դեպքերում և բոլոր մարդկանց հետ չի կարելի խոսել միևնույն լեզվով, միևնույն ոճով. պրոպագանդիստը տարբեր եղանակներով պետք է խոսի գործարանային միտինգում և կազակական ստանիցիայում, ուսանողական ժողովում և գյուղական խրճիթում, 3-րդ դումայի ամբիոնից և արտասահմանյան օրգանի էջերում։ Յուրաքանչյուր պրոպագանդիստի խոսքի արվեստը պետք է երևա լավագույն ձևով լսարանի վրա ներգործելու ուժի, ճշմարտությունը ավելի համոզիչ դարձնելու, ավելի հեշտությամբ յուրացնել տալու և ամուր կերպով տպավորելու մեջ։ Այդ պահանջը պահպանում էր Լենինը բոլոր դեպքերում։ Այսպես, օրինակ՝ «Գյուղական չքավորությունը» բրոշյուրը նա գրել է աշխատավոր գյուղացիության զանգվածներին հասկանալի, գյուղական շրջապատն ու գյուղական հարաբերություններն արտացոլող ասացվածքներով,

ափորիզմներով ու դարձվածքներով հարուստ և գյուղական մասսաներին միանգամայն ըմբռնելի հստակ և կանոնավոր լեզվով. ահա մի քանի օրինակներ. «Մենք, իհարկե, բոլոր ստրկացումները չենք կարող ոչնչացնել, քանի դեռ աշխարհում կա կարիք, իսկ կարիքը չի կարելի ոչնչացնել, քանի դեռ հողն ու ֆաբրիկաները գտնվում են բուրժուազիայի ձեռքին ,քանի դեռ գլխավոր ուժն աշխարհում փողն է, քանի դեռ սոցիալիստական հասարակությունը չի հիմնված»: «Իսկ չքավորությունը միշտ էլ երբեք ավելորդ փող չի ունենում»։ «Եթե նա մի անգամ ընկավ պարտքի տակ, միևնույն է, թե թոկն իր վիզը գցեց»։ «Գյուղական հասարակության մեջ ով փող ունի, նա էլ ուժ ունի»։ «Հենց մեզ մոտ էլ ժողովուրդն այնքան է քայքայված, որ ոչ միայն փողով, այլև մարդկանցով են սկսում վարել»։ «Այդպես էլ ապրում է միջակ գյուղացին ոչ ձուկ է, ոչ էլ թռչուն։ Նա ոչ իսկական կարգին տնտեսատեր է, ոչ բանվոր»։

Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս, բոլոր նրանց,ովքեր զբաղվում են գրական աշխատանքով, աչքաթող չանել ընթերցող բանվորին, առանց անհրաժեշտության չգործածել միջազգային տերմիններ, արտաքնա-



պես գիտական կերպարանք չտալ իրենց գրածին, չվարվել այնպես, ինչպես վարվում են դեկադենտները և պաշտոնական գիտության աստիճանավոր ներկայացուցիչները։ Նա պահանջում էր յուրաքանչյուր պրոպագանդիստից խոսել հասարակ և պարզ, մասսաներին մատչելի լեզվով, դեն գցելով իմաստակ տերմինների ծանր հրետանին, միջազգային ավելորդ բառերը, պատրաստի և անհասկանալի լոզունգները՝ անիմաստ եզրակացությունները։

Վ. Ի. Լենինը ինքը խուսափում էր իր երկերը օտար բառերով ծանրաբեռնելուց, թեև չէր հրաժարվում միջազգային գիտական տերմինաբանությունից և հատկապես այն տերմիններից, որոնք արդեն օգտագործվում էին ռուսերենում և կարող էին հասկանալի լինել ընթերցողին։ Բայց նույնիսկ այն դեպքերում, երբ օտար բառը արդեն գործածվում էր ռուսաց լեզվում, նա նախընտրում էր այդ բառի համարժեքը տալ ռուսերենով, ապա նոր գործածել օտար տերմինը, իսկ երբեմն էլ բացատրել օտար բառը։ Օրինակ՝ նա գյուղացիներին բացատրում էր պրոլետար տերմինը հետևյալ կերպ՝ «Այնպիսի բանվորներին, որոնք ոչ հող ունեն, ոչ արհեստանոց, որոնք իրենց ամբողջ

կյանքում աշխատում են վարձով ուրիշ մարդկանց մոտ, այդպիսի բանվորներին ամբողջ Եվրոպայում անվանում են պրոլետարներ»։

Նա իր աշխատությունների մեջ հաճախ տալիս էր օտար բառը և փակագծերում բացատրում, օրինակ՝ «օրգանիզացիա» (այսինքն՝ միավորում, միություն, կազմակերպություն), «կոլոսալ» (այսինքն՝ հսկայական, անընդգրկելի), «դեմոկրատիա» (այսինքն՝ ժողովրդական իշխանություն), «ֆիդեիստներ» (լատինական ֆիդես «հավատք» բառից) և այլն։ Նա շատ հաճախ միասին օգտագործում էր միևնույն իմաստը արտահայտող օտար և ռուսերեն բառերը, որով միանգամայն հասկանալի էր դարձնում օտար տերմինը, ինչպես՝ մարիոնետ-կուկլա, ֆետիշ-իդոլ. երկու կերպ են բացատրում աշխարհը, քարոզում են դուալիզմ, ընտրել իրենց ձայները (դեպուտատներին) պետական Դումայում (պառլամենտ). գյուղատնտեսական ընկերություն (կոոպերացիա) և այլն։ Մի այլ տեղ նա հետևյալ կերպ էր բացատրում կրեդո տերմինը. «տիկին Կուսկովան իր հայացքները ամենապարզ կերպով արտահայտել է նշանավոր «Կրեդո»-ում կարդացվում է «կրեդո», որ



նշանակում է՝ «հավատո հանգանակ», «ծրագիր» (աշխարհայացքի շարադրում)։ Այդ «Կրեդո»ում ասվում էր թե բանվորները պետք է տնտեսական պայքար մղեն, իսկ լիբերալները՝ քաղաքական։ «Ռաբոչեդելցիները» (օպորտունիստներին այդպես էին անվանում այն ժամանակ սոցիալ-դեմոկրատիայում) էականում ձգտում էին հենց այդպիսի հայացքի, Պլեխանովը կյանքի և մահու կռիվ հայտարարեց այդ հայացքներին (նրան այդ գործում օգնեցին ռուս ռևոլյուցիոն Ս. Դ.) և այդ հողի վրա երկճեղքվեց ՌՍԴԲՊ արտասահմանյան կազմակերպությունը։ Օպորտունիստների և առանձնապես տիկին Կուսկովայի դեմ նա լույս ընծայեց «Վադեմեկում» («ուղեկից» ռաբոչեդելցիների համար) բրոշյուրը»։

Վ. Ի. Լենինը ձգտել է միշտ օգտագործել նպատակային դարձվածքներ ու բառեր, ազատել լեզուն ավելորդ զարդարանքներից, 19-րդ դարի շատ հրապարակախոսներին հատուկ զանազան էպիգրաֆներից ու խոսքին արտաքին էֆեկտ տվող մեջբերումներից, լատինական բառերից ու դարձվածքներից։ Նա ընթերցողների վրա «տպավորություն գործելու» ոճի փոխարեն օգտագործել է ոչ մտացածին, տրամաբանորեն կուռ և

նպատակասլաց ոճը։ Լենինը գրել է, թե Մարքսի և Էնգելսի հանճարեղությունը ի միջի այլոց երևան է եկել և այն բանում, որ նրանք արհամարհում էին գելերտերյան (սխոլաստիկ, ինքնուրույնությունից զուրկ) խաղը նոր բառիկների շուրջը, իմաստակ տերմինները, խորամանկ իզմերը ու պարզ կերպով և ուղղակի ասում էին. փիլիսոփայության մեջ կա մատերիալիստական և իդեալիստական ուղղություն, իսկ նրանց միջև ագնոստիցիզմի զանազան երանգներ»։

Մարքսիզմի կլասիկներին խորթ են բուրժուական սխոլաստիկ և փքուն արտահայտությունները, այսպես կոչված բարձր ոճը, նրանց լեզուն չնայած իր պարզությանը, օրինակելի է և՛ իր գեղարվեստականությամբ և՛ մայրենի լեզվի օրինաչափությունների պահպանման տեսակետից. ինչպես Մարքսն ու Էնգելսը, նույնպես Լենինն ու իր աշակերտները և զինակիցները իրենց ստեղծագործությունների մեջ համաշխարհային կլասիկներին օգտագործելու, գրական կերպարները իբրև համեմատության միջոց ընդունելու, մեջբերումները տեղին, նյութի բովանդակությանը համապատասխան կատարելու մեծ օրինակ են տվել։



Լենինի և իր զինակիցների շնորհիվ գեղարվեստական շատ տիպեր և գրականության մեջ օգտագործված դարձվածքներ ու արտահայտություններ արագ կերպով ժողովրդականացել են ու տարածվել։

Վ. Ի. Լենինը դիպուկ կերպով օգտագործել է համաշխարհային գրականության մեջ հայտնի հերոսներին հատուկ նկատառումներով, օրինակ՝ «հուդայական երդում», «շայլոկյան խստասրտություն», «տարտարենյան ֆրազներ»։ Լենինը տեղին և դիպուկ կերպով օգտագործել է նաև առածներն ու թևավոր խոսքերը, օրինակ՝ «փափուկ են ցույց տալիս, բայց կոշտի վրա են քնեցնում», «կկուն գովում է աքլորին», «սոխակին հեքիաթներով չեն կերակրում» և այլն։

Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն է դարձրել ձևակերպումների վրա։ Նա շատ մեծ գնահատական է տվել Գ. Պլեխանովի գործունեությանը, բայց նաև խիստ քննադատել է նրան ինչպես քաղաքական սխալների, նույնպես և լեզվական անճշտությունների և անորոշությունների համար։ Այսպես, օրինակ՝ նա խոսելով Պլեխանովի կազմած ծրագրի երկրորդ նախագծի մասին, նշում է ոչ միայն նրա քաղաքական սխալները, այլև ոչ ճիշտ ձևակերպումները, որ-

խալ արտահայտությունները։ Նա Պլեխանովի կազմած նախագիծը համարում է ծրագիր «սովորողների համար (մանավանդ ամենագլխավոր բաժնում, որ նվիրված է կապիտալիզմի բնութագրմանը )և այն էլ առաջին կուրսի սովորողների, որտեղ խոսում են կապիտալիզմի մասին ընդհանրապես, բայց դեռ ոչ ռուսական կապիտալիզմի մասին» և ապա պարագրաֆ առ պարագրաֆ ցույց է տալիս ծրագրի այդ նախագծի թերությունները, լեզվական անորոշություններն ու ճապաղ արտահայտությունները։

Պլեխանովն իր աշխատության մեջ, ասում է Վ. Ի. Լենինը, շատ վերացական դատողություններ է անում, չի կոնկրետացնում իր ասածը. օրինակ՝ «պարագրաֆ V-ը տալիս է ընդհանրապես զարգացած կապիտալիզմի դեֆինիցիան: Պարագրաֆ VI-ը խոսում է այն մասին, որ «ինչ չափով մանր արտադրությունը դուրս է մղվում խոշորի կողմից, «ընդլայնվում են» կապիտալիստական արտադրական հարաբերությունները»։

Վ. Ի. Լենինը գտնում է, որ Պլեխանովի այն ձևակերպումը, որի մեջ ասված է «խոշոր ձեռնարկությունների տնտեսական նշանակության մեծացումը և մանրերի դերի նեղացումը», պետք է փոխարինել «մանր



արդյունաբերությունն ավելի ու ավելի դուրս է մղվում խոշորի կողմից» դրույթով, որովհետև «նշանակության մեծացումը և դերի նեղացումը» բառերը «այդ պրոցեսը արտահայտում են միայն ավելի մշուշապատ և ավելի ճապաղ կերպով: Եվ ես այդ բառերի դեմ այսպես եռանդով վիճում եմ ո՛չ թե նրանց թեորիական անճշտության համար, այլև հենց այն բանի համար, որ նրանք խորության տեսք են տալիս հասարակ մշուշապատությանը»:

«Հենց ոճի տեսակետից էլ,— շարունակում է Լենինը,— անցանկալի են այս «նշանակության մեծացումը և դերի նեղացումը» բառերը. դուրս մղման փոխարեն։ Այդ ոչ թե ռևոլյուցիոն պարտիայի, այլ «Ռուսկիյե վեդոմոստի»-ի լեզուն է։ Այդ ոչ թե սոցիալիստական քարոզի, այլ վիճակագրական ժողովածուի տերմին է։ Այդ բառերը կարծես դիտմամբ ընտրված են նրա համար, որպեսզի ընթերցողն այն տպավորությունն ստանա, որ իբր թե բնութագրվող պրոցեսը սուր պրոցես չէ, ոչ մի որոշակի բանով վերջացող պրոցես չէ, անցավագին մի պրոցես է։ Իսկ, որովհետև իրականության մեջ այդ բոլորը հենց ընդհակառակն

է, ապա նույն չափով էլ այդ բառերն ուղղակի սխալ են»։

Վ. Ի. Լենինը խիստ կերպով հետևել է բանվոր դասակարգի գաղափարախոսների լեզվին, նշավակել է մշուշապատ և անհասկանալի ձևակերպումները, սովորեցրել է նրանց իրենց մտքերը շարադրել պարզ և հասկանալի ձևով, որ յուրաքանչյուր բառը իր տեղում լինի, որ յուրաքանչյուր նախադասություն, ինչպես ասում են, ունենա ճարտարապետական կառուցվածք, անխոցելի տրամաբանություն։ Ընթերցելով Լենինի գործերը, պրոպագանդիստը կարող է տեսնել բոլշևիկյան խոսքի նպատակասլացության և հետևողականության սպառիչ օրինակներ։ Լենինյան խոսքի գաղափարական խոր բովանդակությունը, տրամաբանության անհաղթահարելի ուժը, հստակությունն ու պարզությունը պետք է հանդիսանան պրոպագանդիստի և ագիտատորի ուղեցույց աստղը։ Եթե պրոպագանդիստը կարողանա տեսնել անմահ Լենինի լեզվի առանձնահատկությունները և կատարել դրա պահանջները մայրենի լեզվի օրինաչափությունները պահպանելու և խոսքը առավել ներգործուն դարձնելու մասին, նրա պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանքի հաջողությունը ապահովված կլինի։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ԱՆԸՆԴՀԱՏ ԲԱՐՁՐԱՆՈՒՄ Է ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ

(Թվեր և փաստեր)

Հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ջանքերով տարեցտարի բարելավվում է մեր երկրի աշխատավորների նյութական բարեկեցությունը։ Սիստեմատիկաբար բարձրանում է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը և կոլտնտեսականների եկամուտները, մեր երկիրը դառնում է ավելի հզոր և ամրակուռ։ Յուրաքանչյուր նոր տարի մեր երկրին բերում է նոր հաջողություն։

✪ Բնակչության մեկ շնչի հաշվով ՍՍՌՄ-ում ազգային եկամուտը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է 13 անգամ։ Նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ում բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամուտն աճել է երկու անգամից էլ պակաս։

✪ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թիվը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է 4 անգամ, 12

միլիոն 900 հազարի փոխարեն այժմ ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են 52 միլիոն, 600 հազար բանվոր և ծառայող։

✪ Ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների թիվը 1957 թվականին 52,6 միլիոն մարդու դիմաց 1958 թվականին կավելանա, կկազմի 54,4 միլիոն մարդ։ Դրա հետ միասին կբարձրանա բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ռեալ եկամուտները։

✪ Մեր երկրի բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 1950 թվականից մինչև 1957 թվականը աճել է ավելի քան մեկ ու կես անգամ։

✪ 1955 թվականին բնակչությունը պետությունից ստացել է 30 միլիարդ 100 միլիոն ռուբլի պետական կենսաթոշակներ, 1957 թվականին՝ 57 միլիարդ 900 միլիոն ռուբլի, իսկ 1958 թվականի պլանում այդ նպատակով նախատեսված է 66 միլիարդ ռուբլի։ Դա վկայում է, որ մեր երկրում ամեն ինչ արվում է, որպեսզի նա, ովազնվորեն է աշխատել, ունենա լավ ապահովված ծերություն։

✪ Միայն ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձի բարձրացման, կենսաթոշակների հատկացումների ավելացման և փոխառության բաժնեգրության կրճատման հաշվին (եթե վերցնենք փոխառության գծով վճարումների և ստացված շահումների տարբերությունը) բնակչությունը 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ,



ստացել է մոտ 41 միլիարդ ռուբլի գումարով լրացուցիչ եկամուտներ, իսկ 1958 թվականին կստանա ավելի քան 60 միլիարդ ռուբլի, որը ավելի քան երեք անգամ գերազանցում է 1954 թվականի գների իջեցումից բնակչության շահումը։

✪ Անցյալ տարի իրականացվեց սովետական ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման մի շարք խոշոր միջոցառումներ։ Ամենից առաջ բարձրացվեց ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը։ Բարձրացված են կենսաթոշակային ապահովության չափերը, բազմաթիվ ձեռնարկություններում կրճատված է աշխատանքային օրվա տևողությունը և այլն։ Միաժամանակ վերացված են հարկերի գանձումները ամսական մինչև 370 ռուբլի աշխատավարձ ստացող բանվորներից, ծառայողներից և սովորողներից։

✪ Մեծ չափերով ավելացվել է ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ 1957 թվականին մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը 1956 թվականի 541 միլիարդ ռուբլու դիմաց կազմեց ավելի քան 615 միլիարդ ռուբլի։

✪ Միայն 1957 թվականին մանրածախ ապրանքաշրջանառությունը մեծացել է ավելի քան 70 միլիարդ ռուբլով։

✪ 1957 թվականին պետական ու կոոպերատիվ առևտրի ցանցի միջոցով վաճառվել են 3,3 անգամ

ավելի միս ու մսամթերքներ, երեք ու կես անգամ ավելի կենդանական յուղ, կաթ և այլ կաթնամթերքներ, 3,3 անգամ ավելի շաքար, 2,8 անգամ ավելի գործվածքներ, քան 1940 թվականին։

✪ Այս տարի բնակչության համար ավելի շատ ապրանքներ կթողարկվեն։ Բոլոր տեսակի գործվածքների թողարկումը 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, կավելանա 75 միլիոն մետրով։ Կաշվե կոշիկի արտադրությունը, անցյալ տարվա համեմատությամբ, կավելանա 28 միլիոն զույգով, վաճառքի կհանվի 342 միլիոն 200 հազար զույգ կոշիկ։

✪ Այս տարի մսեղենի և կաթնեղենի արտադրության համախառն արտադրանքը կաճի 14 տոկոսով, շաքարի արտադրությունը կավելանա 18 տոկոսով։

✪ 1958 թվականին պետական և կոոպերատիվ առևտրի բնագավառում պլանավորվում է մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը 660 միլիարդ ռուբլու գումարով, այսինքն 45 միլիարդ ռուբլով ավելի, քան 1957 թվականին։

✪ Այժմ պետական մանրածախ գները 2,3 անգամ ցածր են, քան 1941 թվականին, ընդ որում հացի, մսի, յուղի և առաջին անհրաժեշտության մի քանի ուրիշ ապրանքների գներն իջել են էլ ավելի մեծ չափերով։

✪ 1940 թվականի համեմատությամբ դեռևս 1956 թվականին մեր երկրի ամեն մի բանվորական ընտանիք մեկ շնչի հաշվով կաթի և կաթնամթերքների ն-



կատմամբ սպառումն ավելացրել էր 2 անգամ, մսինը և ճարպինը՝ 88 տոկոսով, ձվինը՝ 76 տոկոսով, ձկանը և ձկնամթերքներինը՝ 69 տոկոսով, շաքարինը՝ 2 անգամ։ Նույն ժամանակաշրջանում յուրաքանչյուր կոլտնտեսային ընտանիք, դարձյալ մեկ շնչի հաշվով, շաքարի սպառումն ավելացրել է 4,4 անգամ, բաղդր թխվածքներինը՝ 2,5 անգամ, ձկանը և ձկնամթերքներինը՝ 2,4 անգամ, մսինը՝ 63 տոկոսով և այլն։

✪ Բնակչության մեկ շնչի հաշվով մեր երկրում անընդհատ ավելանում է սպառման կարևորագույն առարկաների արտադրությունը։ 1940 թվականին մեր երկրի ամեն մի բնակչի համար արտադրվել է 21 մետր բամբակե և 0,6 մետր բրդե գործվածք, 1,1 զույգ կոշիկ, 11,3 կիլոգրամ շաքար, 34 կիլոգրամ յուղ, 4,1 կիլոգրամ քաղցր թխվածքներ, 3,6 կիլոգրամ օճառ, իսկ 1956 թվականին՝ 27 մետր բամբակե և 1,3 մետր բրդե գործվածք, 1,4 զույգ կոշիկ, 21 կիլոգրամ շաքար, 85,6 կիլոգրամ յուղ, 7,8 կիլոգրամ քաղցր թխվածք, 6,3 կիլոգրամ օճառ և այլն։

✪ Առաջիկա 15 տարում նախատեսվում է ՍՍՌՄ-ում շաքարի տարեկան արտադրությունը հասցնել 9—10 միլիոն տոննայի, բրդե գործվածքներինը՝ 550—650 միլիոն մետրի, կաշվե կոշկեղենինը՝ 600—700 միլիոն զույգի։

✪ 1957 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, սպառման առարկաների արտադրությունը ավելացել է 13 անգամ։

Անցյալ տարի վիթխարի աշխատանք կատարվեց աշխատավորների բնակարանային պայմանները բարելավելու ուղղությամբ։ Կառուցվեց և շահագործման հանձնվեց 48 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Այս տարի կառուցվելու են 61 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Բացի այդ, այս տարի կոլտնտեսությունների և գյուղական ինտելիգենցիայի ուժերով նախատեսվում է կառուցել 800 հազար բնակելի տուն։

Բնակարանային շինարարության բնագավառում ավելի մեծ աշխատանք է կատարվելու առաջիկայում։ Նախատեսվում է մոտակա 10—12 տարում վերացնել բնակարանների պակասը։ Բնակարանային շինարարության համար կատարվող պետական կապիտալ ներդրումները հինգերորդ հնգամյակի համեմատությամբ 1956—1960 թվականներին աճում են 78 միլիարդ ռուբլով և է՛լ ավելի մեծ չափերով կաճեն հետագա տարիներին։

Մեր երկրում ցածր է բնակարանային վարձը, այն կազմում է ընտանիքի ծախսերի ոչ ավել, քան 4—5 տոկոսը։ Կապիտալիստական երկրներում բնակարանային վարձը շատ բարձր է, այն կազմում է աշխատավարձի մեկ հինգերորդականից մինչև մեկ երրորդ մասը։ Նախառևոլյուցիոն Պետրոգրադում ընտանիքավոր բանվորներն իրենց աշխատավարձի համարյա 21 տոկոսը վճարում էին բնակարանային վարձ։



Աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման գործում խոշոր հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկան։ Միայն վերջին տասը տարում քաղաքներում և բանավաններում կառուցվել են ավելի քան 2,5 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով տներ, իսկ գյուղերում՝ մոտ 50 հազար տուն։

Նախառևոլյուցիոն Հայաստանում չի եղել ոչ մի առողջարան, իսկ ներկայումս Սովետական Հայաստանում գործում են 24 սանատորիաներ և հանգստյան տներ։

---

## СОДЕРЖАНИЕ





Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ